# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ





ՀՈՒԼԻՍ

**14**

1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ






Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.





Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 14
ՀՈՒԼԻՍ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՆՈՐ ԵՎ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Կատարելով մեծ Լենինի պատգամները՝ հարազատ կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը իրենց ամբողջ գործունեությունն ի սպաս են դնում ժողովրդի նյութական բարեկեցությունը բարձրացնելու համար։ Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը ամեն ինչ անում են, որպեսզի մեր երկրի ամեն մի աշխատավոր ավելի լրիվ բավարարի իր նյութական և հոգևոր պահանջմունքները։ Հենց այդ է հաստատում այն փաստը, որ օրերս ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների սովետը ՍՍՌՄ Գերագույն սովետի չորրորդ սեսիայի քննարկմանը ներկայացրին ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման միջոցառումների հարցը, որի մասին խորիմաստ ու փայլուն զեկուցումով հանդես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովը։ Նա հանգամանորեն պարզաբանեց, որ ժողովրդի բարեկեցության բարձրացման մասին մշտական հոգատարությունը դա ՍՄԿՊ ծրագրի «ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» վսեմ սկզբունքի կենսագործման նոր, փայլուն վկայությունն է։*

*Կոմունիստական շինարարության բնագավառում*

ձեռք բերած հաջողությունները սովետական պետությանը հնարավորություն են տալիս սիստեմատիկորեն բարձրացնելու ժողովրդի բարեկեցությունը և ավելի լրիվ բավարարելու նրա աճող պահանջմունքները։

Կոլտնտեսականների կենսաթոշակների ու նպաստների, լուսավորության, առողջապահության, բնակարանային-կոմունալ տնտեսության, առևտրի, հասարակական սննդի և բնակչությանը անմիջականորեն սպասարկող մյուս բնագավառների աշխատողների աշխատավարձը բարձրացնելու մասին ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիայի ընդունած օրենքները սովետական հասարակության ուժի և հզորության, սոցիալիստական էկոնոմիկայի բարգավաճման վկայությունն են։

Սեսիան ընդունեց կոլտնտեսությունների անդամների կենսաթոշակների և նպաստների մասին օրենքը, որը գործողության մեջ կմտնի 1965 թվականի հունվարի 1-ից։

Կենսաթոշակների և նպաստների օրենքով նախատեսվում է արմատապես բարելավել կոլտնտեսականների սոցիալական ապահովության գործը։ Խոսքը վերաբերում է կոլտնտեսականի օրինականացված իրավունքին՝ կենսաթոշակ ստանալու ծերության, հիվանդության, աշխատավոր ձեռքից զրկվելու դեպքում, ինչպես նաև ստանալու զանազան նպաստներ։

Կոլտնտեսությունների մասհանումների և պետական բյուջեի ամենամյա հատկացումների հաշվին ստեղծվելու է կոլտնտեսականների սոցիալական ապահովության միութենական ֆոնդ։

Կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով, այն կոլտնտեսականների թիվը, որոնք կենսաթոշակի իրավունք կունենան, կկազմի մոտ 6,5 միլիոն։ Մոտավոր հաշիվներով, կենսաթոշակների ու նպաստների վճարման ծախսերը տարեկան կհասնեն 1,3--1,4 միլիարդ ռուբլու։ Այդ ծախսերը հատուցելու համար կոլտնտեսությունները տարեկան կմասհանեն իրենց եկամուտների մոտավորապես երեք—չորս տոկոսը, որը 1965 թվականին կկազմի մոտ 800 միլիոն ռուբլի։

Կոլտնտեսականներին կենսաթոշակներ և նպաստներ վճարելը սկսվելու է 1965 թվականի հունվարի 1-ից։ Միջոցների անհրաժեշտ ռեզերվ ստեղծելու համար 1964 թվականին կոլտնտեսությունների եկամուտներից կմասհանվի երկու տոկոսի չափով, որը կկազմի մոտ 350 միլիոն ռուբլի։ Կոլտնտեսականներին կենսաթոշակ-



ների ու նպաստների ձևով վճարվելիք միջոցների զգալի մասը կհատկացվի պետական բյուջեից։

Կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովության սիստեմը կշաղկապվի կոլտնտեսությունների տնտեսական զարգացման աստիճանի, նրանց արտադրության մակարդակի, հանրային տնտեսության զարգացման և ամրապնդման գործում կոլտնտեսականների աշխատանքային ավանդի, ինչպես նաև կենսաթոշակային ապահովության համամիութենական ֆոնդում կոլտնտեսության ներդրման հետ։

Հարկավոր է բոլոր կոլտնտեսականներին ուղղակի և անկեղծորեն ասել, ընդգծում է Ն. Ս. Խրուշչովը, որ սովետական պետության կենսաթոշակային քաղաքականության նպատակը կլինի ծերության ժամանակ ևս խրախուսել նրանց, ովքեր լավ են աշխատում։ Թող յուրաքանչյուր մարդ իմանա, որ եթե ինքը լավ է աշխատում այսօր, ապա նա լավ ապահովված կլինի նաև ծերության ժամանակ։ Այդ մոտեցումը բխում է կոլտնտեսականների շահերից, ամբողջ սովետական հասարակության շահերից։

Որո՞նք են օրենքի դրույթները։ Մտցված են կոլտնտեսականների համար ծերության, հաշմանդամության, աշխատավոր ձեռքից զրկված երեխաների կենսաթոշակային ապահովություն, ինչպես նաև կոլտնտեսուհիների համար՝ հղիության և ծննդաբերության նպաստներ։ Կոլտնտեսականների ծերության կենսաթոշակները սահմանված են տղամարդկանց համար 65 տարեկան դառնալու և առնվազն 25 տարվա աշխատանքի ստաժ ունենալու դեպքում, կանանց համար՝ 60 տարեկան դառնալու և առնվազն 20 տարվա աշխատանքի ստաժ ունենալու դեպքում։ Աշխատանքային ստաժի մեջ հաշվի է առնվում ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում կատարած աշխատանքը և Սովետական բանակում ծառայելը։

Ծերության կենսաթոշակները սահմանված են ըստ վաստակի, այն է՝ ամսական մինչև 50 ռուբլի վաստակի դեպքում՝ դրա 50 տոկոսը, իսկ վաստակի մնացած մասի 25 տոկոսը։ Այդպիսով, այն կոլտնտեսականին, որն իր աշխատանքի դիմաց ստանում է, օրինակ, ամսական 50 ռուբլի, կնշանակվի 25 ռուբլի կենսաթոշակ, 70 ռուբլի ստացողին՝ 30 ռուբլի կենսաթոշակ։ Այն կոլտնտեսա-

կաններին՝ որոնք ունեն 30 ռուբլու վաստակ, կնշանակվի 15 ռուբլի կենսաթոշակ:

Այսպիսով, տնտեսության զարգացման մակարդակը կանդրադառնա կոլտնտեսականներին կենսաթոշակով ապահովելու վրա: Այն կոլտնտեսությունում, որտեղ բարձր է մթերքների արտադրության մակարդակը, ուրեմն և բարձր են կոլտնտեսականների վաստակներն ու կենսաթոշակի ֆոնդին արվող մասհանումները, կլինեն նաև ավելի բարձր կենսաթոշակներ:

Ծերության նվազագույն կենսաթոշակը սահմանվում է ամսական 12 ռուբլի: Կենսաթոշակի առավելագույն չափը նախատեսված է սովխոզների բանվորների համար որոշված չափի սահմաններում, այսինքն՝ ամսական 102 ռուբլի:

Օրենքը խրախուսում է այն կոլտնտեսականներին, որոնք կենսաթոշակ նշանակելուց հետո չեն թողնում աշխատանքը կոլտնտեսությունում: Եթե կոլտնտեսականը կենսաթոշակի անցնելուց հետո շարունակի աշխատել, ապա անկախ վաստակի չափից նրան կվճարվի սահմանված կենսաթոշակը: Ընդսմին, եթե կենսաթոշակ նշանակելուց հետո կոլտնտեսականը երկու տարվա ընթացքում ավելի բարձր վաստակ ունենա, ապա կենսաթոշակը կարելի է բարձրացնել այդ վաստակին համապատասխան: Դա կխրախուսի կոլտնտեսականների ակտիվ մասնակցությունը հանրային արտադրությանը, նրանց ավելի արտադրողական աշխատանքի կկոչի:

Այն կոլտնտեսականների համար, որոնք հանրային տնտեսության աշխատանքին անփույթ են վերաբերվել, կոլտնտեսության վարչության կամ ընդհանուր ժողովի առաջադրմամբ կնշանակվեն ցածր կենսաթոշակներ կամ ամենևին չեն նշանակվի:

Կոլտնտեսականների կենսաթոշակները հաշվարկելիս նկատի է առնված կենսաթոշակի համար դիմելուց առաջ վերջին 15 տարվա ընթացքում կոլտնտեսությունում նրանց անընդմեջ աշխատանքի ցանկացած հինգ տարվա միջին ամսական փաստական վաստակը:

Հաշմանդամության կենսաթոշակ է նշանակված առաջին և երկրորդ խմբի հաշմանդամների համար: Եթե հաշմանդամությունը աշխատանքային խեղման կամ պրոֆեսիոնալ հիվանդության հետևանք է, կենսաթոշակ կնշանակվի անկախ աշխատանքի ստաժից: Այն դեպքում, երբ հաշմանդամությունը կապված է ընդհա-



նուր հիվանդության հետ, կենսաթոշակ ստանալու համար պահանջվում է մեկ տարուց մինչև 20 տարվա աշխատանքի ստաժ, նայած կոլտնտեսականի տարիքին, այսինքն այնպես, ինչպես պետական կենսաթոշակների օրենքով սահմանված է բանվորների և ծառայողների համար:

Միևնույն տարիքի դեպքում կոլտնտեսուհիների համար հաշմանդամության կենսաթոշակ է նշանակվում տղամարդկանց համեմատությամբ պակաս աշխատանքի ստաժ ունենալու դեպքում: Օրինակ, 53 տարեկան կնոջը հաշմանդամության կենսաթոշակ սահմանելու համար պահանջվում է 13 տարվա աշխատանքային ստաժ, իսկ նույն տարիքի տղամարդու համար՝ 16 տարվա աշխատանքի ստաժ:

Նպատակահարմար է հաշմանդամության կենսաթոշակի չափը հաշվարկել, ելնելով կոլտնտեսականի փաստական վաստակից, այնպես, ինչպես որոշվում է ծերության կենսաթոշակը: Առաջին խմբի հաշմանդամների համար սահմանված են կենսաթոշակի նույն չափերը, որ սահմանվում է ծերության կենսաթոշակառուների համար, իսկ երկրորդ խմբի հաշմանդամների համար՝ փոքր-ինչ պակաս:

Կերակրողին կորցնելու դեպքում կենսաթոշակ է նշանակվում կոլտնտեսության մահացած անդամների այն երեխաների համար, որոնք գտնվել են մահացածի խնամքի տակ, եթե նրանք չեն հասել 16 տարեկան հասակի (սովորողները՝ 18 տարեկան հասակի), կամ մանկությունից առաջին խմբի հաշմանդամներ են: Կերակրողին կորցնելու դեպքում կենսաթոշակի չափը սահմանված է՝ ելնելով կերակրողի վաստակից և երեխաների թվից:

Օրենքով սահմանված է կոլտնտեսուհիների հղիության և ծննդաբերության նպաստ: Նրանց տրվում է ծննդաբերությունից առաջ 56 օրացուցային օրվա և ծննդաբերությունից հետո՝ 56 օրացուցային օրվա վճարովի արձակուրդ: Ընդսմին նպաստը վճարվելու է բանվորուհիների և ծառայող կանանց համար գործող պայմաններով ու նորմաներով:

Սեսիան, քննության առնելով ժողովրդի բարեկեցության բարձրացման հարցը, ընդունեց օրենք լուսավորության, առողջապահության, բնակարանային-կոմունալ տնտեսության, առևտրի, հասարակական սննդի և բնակչության սպասարկման հետ կապված ժողովրդա-

կան տնտեսության մյուս բնագավառների աշխատողների աշխատավարձը բարձրացնելու վերաբերյալ։ Աշխատանքի վարձատրության նոր պայմանների կփոխադրվեն ավելի քան 18 միլիոն մարդ, այդ թվում երկու միլիոն 200 հազար ուսուցիչներ և երկու միլիոն 600 հազար լուսավորության այլ աշխատողներ, ավելի քան 500 հազար բժիշկներ, ավելի քան մեկուկես միլիոն բուժքույրեր, մանկաբարձներ և բժշկական մյուս միջին աշխատողներ, մոտ մեկ միլիոն 300 հազար սանիտարուհիներ և բժշկական կրտսեր այլ աշխատողներ, բնակարանային-կոմունալ տնտեսության ավելի քան երկու միլիոն, առևտրի և հասարակական սննդի ավելի քան չորս միլիոն աշխատողներ։

Օրենքով լուսավորության աշխատողների աշխատավարձը բարձրացվում է միջին հաշվով 25 տոկոսով, իսկ աշխատողների առանձին կատեգորիաներինը, օրինակ, նախադպրոցական հիմնարկների դաստիարակներինը՝ միջին հաշվով գրեթե 40 տոկոսով։

Առողջապահության, սոցիալական ապահովության, ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատողների աշխատավարձը կավելանա միջին հաշվով 23, առևտրի աշխատողներինը՝ 15, հասարակական սննդի աշխատողներինը՝ 25, բնակարանային-կոմունալ տնտեսության և կենցաղային սպասարկման աշխատողներինը՝ միջին հաշվով 15 տոկոսով։

Առաջիկայում կբարձրանա նաև տեղական պետական ապարատի աշխատողների աշխատավարձը։

Բացի այդ, տեղերում կբարձրացվի դատախազության ու դատական օրգանների աշխատողների, պլանային ու վիճակագրական աշխատողների, խնայողական դրամարկղների, պետական ապահովագրության, նյութա-տեխնիկական մատակարարման, վաճառահանման, մթերումների սիստեմի և մի քանի այլ կազմակերպությունների աշխատողների աշխատավարձը։

Սեսիան որոշել է աշխատավարձի նոր սիստեմին անցնել հետևյալ ժամկետներում։

1964 թվականի հոկտեմբերին աշխատավարձի նոր դրույքներին փոխադրել ծայրագույն հյուսիսի և նրան հավասարեցված վայրերի սպասարկման ոլորտի բոլոր բնագավառների աշխատողներին։

1964 թվականի նոյեմբերին աշխատավարձի նոր սիստեմ մտցնել երկրի մյուս շրջանների լուսավորության և



առողջապահության աշխատողների համար։ Այդպիսով, արդեն այս տարի լուսավորության և առողջապահության բոլոր աշխատողների համար կսահմանվեն աշխատավարձի բարձր դրույքներ։

1965 թվականի երրորդ եռամսյակում կբարձրացվի բնակարանային-կոմունալ տնտեսության աշխատողների աշխատավարձը։

1965 թվականի չորրորդ եռամսյակում աշխատավարձի նոր պայմաններ են մտցվելու առևտրի, հասարակական սննդի, կուլտուր-լուսավորական հիմնարկների և սպասարկման ոլորտի մյուս բնագավառներում։

«Կոմունիստական պարտիան, սովետական ժողովուրդը,— ասաց սեսիայում Ն. Ս. Խրուշչովը,— պայքարում են մեր երկրում նյութական ու հոգևոր բարիքների առատություն ստեղծելու համար։ Եվ մենք հաստատ հավատացած ենք, որ կստեղծենք դա, մեզանում կոմունիստական առատություն կլինի։ Բայց դրան կհասնենք միայն աշխատանքի բարձր արտադրողականության հիման վրա։ Հենց դա է այն բանալին, որով մենք կբացենք կոմունիստական հասարակարգի դռները։ Կոմունիզմը կարելի է կառուցել միլիոնավոր ու միլիոնավոր բանվորների, կոլտնտեսականների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, գիտնականների, ժողովրդական կրթության ու առողջապահության, կուլտուրայի գործիչների, ֆիզիկական ու մտավոր բոլոր աշխատողների աշխատանքով և միայն աշխատանքով»։

ՍՍՌՄ Գերագույն սովետի որոշումները մեր երկրում առաջ են բերել քաղաքական ակտիվություն և աշխատանքային նոր, հզոր վերելք։ Սովետական մարդիկ համակված են վեհ ձգտումով՝ հարազատ պարտիայի հոգատարությանը պատասխանել աշխատանքային նորանոր սխրագործություններով։ Նրանք գործի կդնեն իրենց ջանքերն ու եռանդը՝ կոմունիզմի ճանապարհին նորանոր բնագծեր նվաճելու համար։

---

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՊԱՐՏԻԱՅԻՑ ԴԵՊԻ ԱՄԲՈՂՋ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՐՏԻԱ

*Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը արդիականության բոլոր արմատական տեսական ու քաղաքական պրոբլեմների շուրջը դաժան պայքար է ծավալել և ավելի ու ավելի է ուժեղացնում քայքայիչ գործունեությունը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման համաձայնեցված և Մոսկվայի 1957 ու 1960 թվականների խորհրդակցությունների փաստաթղթերի մեջ արտահայտված գծի դեմ։ Այդ կամպանիայի սոցիալական էությունն է՝ ձախ ավանտյուրիստական, մանրբուրժուական, նացիոնալիստական գաղափարախոսության հակադրումը մարքսիզմ-լենինիզմին։ Նրա քաղաքական նպատակն է՝ ձգտումը հեգեմոնիզմի։ Ձևերն ու մեթոդներն են՝ տրոցկիստներից փոխ առնված անզուսպ շաղակրատությունը և կեղծ ռևոլյուցիոն ֆրազաբանությունը, որոնք կոչված են քողարկելու հրաժարումը մարքսիզմ-լենինիզմի արմատական սկզբունքներից, պրոլետարական ինտերնացիոնալիզմից, հերյուրանքը եղբայրական պարտիաների հասցեին, նրանց շարքերում հակապարտիական և մերձպարտիական ֆրակցիոն խմբերի ստեղծումը, բացարձակ պառակտչական գործունեությունը։*

*Այդ ժամանակակից «ձախ» օպորտունիզմի հավատամքը, որն առավել լրիվ կերպով արտահայտված է Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի 1963 թվականի հունիսի 14-ի նամակի տխրահռչակ 25 կետերում, անհրաժեշտ գնահատական ստացավ ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի փաստաթղթերում, եղբայրական պարտիաների հայտարարությունների մեջ։ Միայն մեկ տեսական ու քաղաքական պրոբլեմի վերլուծության օրինակով մենք մտադիր ենք քննության առնել, թե իրենցից ինչ են ներկայացնում պեկինցի լիդերների «տեսական» հնարքները, ինչ նպատակների են ծառայում դրանք։*

*Աստիճանաբար ընդլայնելով այն պրոբլեմների շրջանակը, որոնց շուրջը մտադիր են իրենց տեսակետը*



*պարտադրել եղբայրական պարտիաներին, չինական ղեկավարներն իրենց հարձակումների օբյեկտ դարձրին նաև մարքսիստական-լենինյան պարտիաների ու հատկապես ՍՄԿՊ-ի ներքին կյանքը, կրակը կենտրոնացնելով մեր պարտիայի XXII համագումարի կողմից ընդունված ծրագրի դեմ։ Պեկինցի գաղափարախոսները, որոնք «չինականացնում» են մարքսիզմ-լենինիզմը, մասնավորապես համաձայն չեն այն բանի հետ, որ պրոլետարական պարտիան կարող է դառնալ ժողովրդական պարտիա։ Նրանք մերժում են մեր պարտիայի ծրագրի այն եզրակացությունը, թե ՍՄԿՊ-ն դարձել է ամբողջ ժողովրդի պարտիան, և այդ եզրակացությունը գնահատում են ոչ այլ կերպ, քան որպես «պրոլետարիատի կազմակերպական ու բարոյական զինաթափում» և նույնիսկ որպես «ծառայություն կապիտալիզմի վերականգնմանը»։*

*Նրանք, բնական է, այդ առթիվ որևէ հասկանալի բան չեն կարողանում ասել և փաստարկների բացակայությունը լրացնում են հայհոյանքներով ու գրպարտչական հերյուրանքներով, խիստ խուսափում են գործերի իսկական վիճակի վերլուծությունից։ Սակայն, քանի որ այդ հերյուրանքները տարածվում են բոլոր հնարավոր միջոցներով ու մասսայական քանակով, անհրաժեշտ է հարցը քննության առնել ըստ էության։*

## Պարտիայի զարգացման դիալեկտիկան

*Մարքսիստները երբեք չեն կասկածել, որ կոմունիստական պարտիայի, ինչպես և ամեն մի հասարակական օրգանիզմի զարգացումը տեղի է ունենում դիալեկտիկայի օրենքների հիման վրա։ Ինչպես և ամեն ինչ աշխարհում, պարտիան ունի իր անցյալը, ներկան և ապագան։*

*Չնայած տարբեր երկրներում պարտիաների զարգացման յուրատեսակությանը, դժվար չէ տեսնել այդ զարգացման որոշ ընդհանուր գծերը։ Սովորաբար ծագելով որպես համախոհների ոչ մեծ, սերտորեն համախմբված խումբ, պարտիան, միանալով բանվորական շարժման հետ, դառնում է լայն մասսաներին ղեկավարելու ընդունակ ուժ։ Դա հաստատվում է ոչ միայն Սովետական Միության կոմունիստական պարտիայի, այլև շատ ուրիշ կոմունիստական ու բանվորական պարտիաների պատմության փաստերով։*

*Մարքսիստական-լենինյան պարտիան իր զարգաց-*

ման ընթացքում անցնում է պատմական երեք փուլ՝ ուժերի կուտակում, բանվոր դասակարգի նախապատրաստում պայքարի, շահագործողների տիրապետության տապալում և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատում. սոցիալիզմի՝ կոմունիզմի առաջին փուլի կառուցում. կոմունիստական հասարակարգի ստեղծում։ Այս փուլերը տարբերվում են ոչ միայն պարտիայի առջև ծառացած նպատակներով, այն պայմաններով, որոնցում նա ստիպված է լինում գործել, այլև հասարակության մեջ պարտիայի դիրքով։

Երբ Ռուսաստանում ստեղծվում էր ռևոլյուցիոն մարքսիստական պարտիա, Լենինն առանձնահատուկ նշանակություն էր տալիս նրա դասակարգային բնույթի ճիշտ որոշմանը, բանվոր դասակարգի պայքարի մերձավոր ու վերջնական նպատակների գիտական բնորոշմանը։ Լենինը պնդում էր, որ «անպայման սկզբում անջրպետվել բոլորից, առանձնացնել միայն մեկը, մ ի ա յ ն և բացառապես, պրոլետարիատին,—իսկ այնուհետև արդեն հայտարարել, որ պրոլետարիատը բոլորին կազատագրի, բոլորին կանչում, բոլորին հրավիրում է»։

Բանվոր դասակարգից բացի ոչ մի այլ դասակարգ չի կարող առաջադրել և առավել ևս հասնել այնպիսի նպատակի, ինչպիսին է մարդու կողմից մարդու շահագործման բոլոր ձևերի վերացումը, կոմունիստական հասարակարգի՝ անդասակարգ հասարակարգի կառուցումը։ Ոչ մի այլ դասակարգ չի կարող գլխավորել բոլոր աշխատավորների և շահագործվողների պայքարը, միավորել նրանց ջանքերը։ Միայն բանվոր դասակարգը, պայքարելով իշխանության համար, շահագրգռված չէ իր դասակարգային տիրապետության հավերժացմամբ և խնդիր է դնում վերացնել ամեն տեսակի դասակարգերը և ամեն տեսակի տիրապետությունը։ Բանվոր դասակարգի այդ հատուկ դերն ու դիրքն էլ հենց որոշում են նրա պարտիայի՝ որպես պրոլետարական պարտիայի, պրոլետարիատի դիկտատուրայի համար պայքարի պարտիայի դիրքը հասարակության մեջ։

Բայց, ընդգծելով իր դասակարգային բնույթը, պարտիան ամենևին էլ չի մեկուսանում բնակչության մյուս, ոչ պրոլետարական աշխատավոր խավերից։ Ընդհակառակը, նա գտնում է, որ բանվոր դասակարգի ավանգարդը միայն այն ժամանակ է իսկապես լիովին արտահայ-



տում նրա դասակարգային շահերը, երբ արտահայտում ու պաշտպանում է ժողովրդի ճնշող մեծամասնության, բոլոր աշխատավորների շահերը։ Չէ՞ որ բանվոր դասակարգը չի կարող պարփակվել ցեխային նեղ շրջանակների մեջ։ Նա իսկապես ռևոլյուցիոն է դառնում սոսկ այն չափով, որչափով բոլոր դրսևորումներում և կյանքի բոլոր բնագավառներում հանդես է գալիս որպես բոլոր աշխատավորների և շահագործվող մասսաների առաջնորդը։

Արդեն առաջին ծրագրի մեջ, որը մշակվեց Վ. Ի. Լենինի անմիջական մասնակցությամբ, պարտիան հայտարարեց, որ ստանձնում է ժողովրդի բոլոր աշխատավորական խավերի շահերի ներկայացուցչությունը։ Եվ դա վկայում է ոչ թե պրոլետարիատի դասակարգային դիրքերից պարտիայի նահանջի մասին, այլ, ընդհակառակը, այն մասին, որ նա խորապես հասկանում է բանվոր դասակարգի հատուկ պատմական դերը, նրա հատուկ դիրքը հասարակության մեջ։ «Բանվոր դասակարգի պարտիան՝ սոցիալ-դեմոկրատիան,— ասված էր ծրագրի մեջ,— իր շարքերն է կոչում աշխատավոր և շահագործվող բնակչության բոլոր խավերին, որչափով որ նրանք պրոլետարիատի տեսակետին են անցնում» («ՍՄԿՊ-ն բանաձևերում...», հատ. 1-ին, էջ 44)։

Ռուսաստանում արդեն Հոկտեմբերի նախօրյակին բանվոր դասակարգի պարտիան հանդես էր գալիս որպես ազգային շահերի իսկական արտահայտիչ։ Դա էր պարտիայի քաղաքականության մասսայական պաշտպանության և սոցիալիստական ռևոլյուցիայի հաջողության պատճառներից մեկը։ Զարգանալով կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Հոկտեմբերյան ռևոլյուցիան պրոլետարական, սոցիալիստական և միևնույն ժամանակ ժողովրդական ռևոլյուցիա էր։ Դրանով արտահայտվեց այն, որ հասարակական կյանքի վճռական հարցերում բանվոր դասակարգը հանդես էր գալիս «որպես ամբողջ ազգի ներկայացուցիչ, որպես ներկայացուցիչն այն ամենի, ինչ որ կենդանի է և ազնիվ բոլոր դասակարգերի մեջ (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 103)։

Տառացիորեն ռևոլյուցիայի հաջորդ օրը, բնութագրելով կառավարող դարձած պարտիայի փոխված վիճակը, Վ. Ի. Լենինը պարտիայի բոլոր անդամներին և Ռուսաստանի բոլոր աշխատավոր դասակարգերին ու-

ղղված դիմումի մեջ կոմունիստական պարտիան անվանում էր «սովետական մեծամասնության պարտիա», ընդգծելով, որ նա հաստատ կանգնած է բանվորների, վինվորների, գյուղացիների շահերի պաշտպանության դիրքերում, որոնք ընթանում են պարտիայի ետևից և պատրաստ են իրագործել խաղաղության, հաշտության և սոցիալիզմի հաղթանակը (Լենին, Երկեր, հատ. 26, էջ 370)։ Այն ժամանակ «սովետական մեծամասնության» մեջ մտնում էին բանվորները, գյուղացիները, երկրի բոլոր աշխատավորները, որոնք կազմում էին նրա ժողովուրդը։ Իր աշխատություններից շատերում Լենինն ընդգծել է, որ պարտիան հենց նրանով է ուժեղ, որ ճիշտ է արտահայտում այն, ինչ գիտակցում է ժողովուրդը։

Մարքսիստները երբեք պարտիայի սոցիալական բնույթը չեն շփոթել այն բանի հետ, թե սոցիալական որ խավերի շահերն է արտահայտում նա։ Որքան լայն է սոցիալական ուժերի ճակատը, որոնց պարտիան տանում է իր ետևից, այնքան նրա համար ավելի մեծ նշանակություն է ստանում իր պրոլետարական բնույթն անաղարտ պահելը, որպես ռևոլյուցիոն վերափոխումների իրականացման գործում հաստատակամության ու հետևողականության երաշխիք։

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը բացում է սոցիալիստական սկզբունքներով հասարակության արմատական վերակառուցման, բոլոր շահագործական դասակարգերի ոչնչացման, աշխատավոր դասակարգերի միջև գոյություն ունեցող սահմանների աստիճանաբար վերացման համար պայմաններ ստեղծելու մի ամբողջ ժամանակաշրջան։ Եվ ճիշտ այնպես, ինչպես պրոլետարիատն իրեն վերափոխում է ռևոլյուցիոն փոփոխությունների ընթացքում, այդպես էլ աստիճանաբար շատ բան է փոխվում հենց պարտիայի, նրա կազմի, նրա գործունեության մեթոդների մեջ։

Եթե անցողական շրջանի սկզբում պարտիան խիստ միջոցներ է ձեռնարկում իր շարքերը ոչ պրոլետարական տարրերի ներթափանցումից պաշտպանելու համար, ապա անցման շրջանի արմատական խնդիրները լուծելուց հետո պարտիան իր դռները լայնորեն բացում է բոլոր նրանց համար, ովքեր անկեղծորեն ձգտում են ակտիվորեն մասնակցել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցմանը։ Սոցիալիստական շինարարության խնդիրների լուծմանը զուգընթաց փոփոխվել է սովետական հասա-



րակության դասակարգային կառուցվածքը, աճել է մասսաների քաղաքական գիտակցությունը, և պարտիան ավելի սերտորեն է մոտեցել աշխատավորների բոլոր խավերին, իսկ նրա գաղափարները ժողովուրդն ավելի ու ավելի է ընդունել որպես իր սեփական գաղափարներ։

Այսպիսով, որպես բանվոր դասակարգի ավանգարդ ծնունդ առած պարտիան ավելի ու ավելի է դարձել աշխատավորների, սովետական ժողովրդի առաջավոր մասը։ Հենց այդ էլ արձանագրվեց Սովետական Միության՝ 1936 թվականին ընդունված կոնստիտուցիայի մեջ։ Այնտեղ ասված է, որ «բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիների և աշխատավոր ինտելիգենցիայի շարքերից առավել ակտիվ և գիտակից քաղաքացիները կամավոր կերպով միավորվում են Սովետական Միության կոմունիստական պարտիայի մեջ, որը աշխատավորների առաջավոր ջոկատն է հանդիսանում կոմունիստական հասարակարգի կառուցման համար նրանց պայքարում...»։

Սովետական Միության կոմունիստական պարտիային գրեթե քսան տարի պահանջվեց անցման շրջանի դժվարությունները հաղթահարելու և սոցիալիզմի շինարարության ավարտման ու սոցիալիզմն աստիճանաբար կոմունիզմի վերաճելու ուղին դուրս գալու համար։ Հայտնի է, որ այս կապակցությամբ մեր պարտիայի կանոնադրության մեջ նէպի առաջին տարիներից մինչև 1939 թվականն անփոփոխ կերպով տարբեր պայմաններ էին պահպանվում պարտիայի մեջ բանվորների և աշխատավորների մյուս խավերի ընդունելության համար։ Պատահական չէ, որ հենց XVIII համագումարում՝ 1939 թվականին, երբ անցման ժամանակաշրջանն արդեն ետևում էր մնացել, պարտիան վերացրեց իր շարքերի ընդունելության տարբեր պայմաններն ըստ սոցիալական դրության և սկսեց ղեկավարվել բոլորի՝ և՛ բանվորների, և՛ գյուղացիների և՛ ինտելիգենցիայի ներկայացուցիչների համար միասնական պայմաններով։ Դա այն պատմական փաստի արտահայտությունն էր, որ ոչ միայն արմատական փոփոխություններ են տեղի ունեցել երկրի աշխատավորների ոչ-պրոլետարական խավերի կյանքի սոցիալ-տնտեսական պայմաններում, այլև խորագույն փոփոխություններ են տեղի ունեցել նրա իդեոլոգիայում, ինչպես նաև հանդիսանում էր այն բանի արդյունքը, որ պարտիան հաշվի էր առել սոցիալիզմի հաղթանակի

հետևանքով ստեղծված նոր իրադրությունը, որը նշանակում էր հնարավորությունների ստեղծում կոմունիստական պարտիայի՝ աստիճանաբար համաժողովրդական պարտիա դառնալու համար։

Ամենածանր և ավերիչ պատերազմն ընդհատեց սոցիալիստական հարաբերությունները կոմունիստականի վերաճելու, կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու պրոցեսը։ Պարտիայի համաժողովրդական դառնալու պրոցեսը չէր կարող չդանդաղել նաև այն բանի հետևանքով, որ շարունակ ուժեղանում էր Ստալինի անձի պաշտամունքը և այդ կապակցությամբ տարածվում էին ղեկավարման՝ լենինյան պարտիային ոչ հատուկ մեթոդները, խախտվում էին պարտիական կյանքի դեմոկրատական հիմունքները։

Բայց երբ երկիրը վերացրեց պատերազմի հետևանքները և պարտիան, նոր փորձով հարստացած, մշակեց կոմունիստական շինարարության գիտականորեն հիմնավորված ուղին, երբ վճռական միջոցներ ձեռնարկվեցին Ստալինի պաշտամունքը և նրա վնասակար հետևանքները հաղթահարելու համար, հարաճուն ուժով սկսեց երևան գալ մեր պարտիայի զարգացման օրինաչափ տենդենցը՝ աստիճանաբար համաժողովրդական պարտիա դառնալու տենդենցը։

Սոցիալիստական շինարարության աչքի ընկնող հաջողությունները և այդ կապակցությամբ Սովետական Միության և՛ տնտեսական, և՛ պաշտպանական հզորության հսկայական աճը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումն ու ամրապնդումը սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում դարձրին ոչ միայն լրիվ, այլև վերջնական։ Պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության մերձեցման, ամբողջ ժողովրդի կուլտուրայի աճի հիման վրա արագացան բանվորների, գյուղացիների, ինչպես նաև նրանց և ինտելիգենցիայի դասակարգային տարբերությունների վերացման տեմպերը։ Դա ամրապնդեց սովետական հասարակության սոցիալական միատարրությունը։ Բանվոր դասակարգի և նրա ավանգարդի՝ պարտիայի գաղափարախոսությունը դարձավ ամբողջ ժողովրդի գաղափարախոսությունը։

Այս փոփոխությունները չէին կարող չանդրադառնալ պարտիայի բնույթի, նրա կազմի, հասարակության կյանքում նրա դերի վրա։ Հենց դա էլ իր արտահայտությունը գտավ ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված պարտիայի ծրագրի ու կանոնադրության մեջ, որոնցում ընդգրկված է պարտիայի համաժողովրդական բնույթը կոմունիզմի ծավալուն կառուցման պայմաններում։

Թևակոխելով ծավալուն կոմունիստական շինարարության ժամանակաշրջանը և ամփոփելով սովետական իշխանության տարիների իր գործունեության արդյունքները, պարտիան օբյեկտիվ հնարավորություն ստացավ իր նոր ծրագրում հետևյալ ամփոփ եզրակացությունն անելու համար. «ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի, սովետական հասարակության միասնության ամրապնդման շնորհիվ բանվոր դասակարգի կոմունիստական պարտիան վերածվեց սովետական ժողովրդի ավանգարդի, դարձավ ամբողջ ժողովրդի պարտիա, ընդլայնեց իր ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա»։ Այս տեսական դրույթը ոչ թե ապագային ուղղված լոզունգ է, այլ մեր պարտիայի ռեալ դրության արձանագրումն է։ Այն ամփոփում է երկրի կյանքում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական մեծ փոփոխությունները։ Նրա մեջ, ինչպես կիզակետում, արտացոլված են պարտիայի բազմամյա պայքարը պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար և նոր հասարակարգի կառուցումը կազմակերպելու, ոչ միայն էկոնոմիկայի և հասարակական հարաբերությունների, այլև բազմամիլիոնանոց մասսաների գիտակցության սոցիալիստական վերակառուցման, սովետական ժողովրդի սոցիալ-տնտեսական միասնության ամրապնդման համար նրա կատարած աշխատանքի արդյունքները։

Սովետական Միության կոմունիստական պարտիան չի դադարել բանվոր դասակարգի պարտիա լինելուց, քանի որ նա եղել և մնում է որպես նրա կոմունիստական իդեալների արտահայտիչը։ Բայց կոմունիստական պարտիան մեր երկրում դարձել է ոչ միայն բանվոր դասակարգի, այլև ամբողջ ժողովրդի պարտիան, որովհետև ամբողջ ժողովուրդն ընդունել է բանվոր դասակարգի մարքսիստական-լենինյան աշխարհայացքը, նրա իդեալները։ Այս է սովետական հասարակարգի զարգացման կենդանի դիալեկտիկան։

(Շարունակելի)

*(ՍՄԿՊ Կենտկոմի օրգան «Պարտիյնայա ժիզն» ամսագրի 1964 թ. 8-րդ համարից)*

---

# ՄԵԾ ՔԻՄԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

(Թվեր և փաստեր)

**Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում վիթխարի է քիմիական արդյունաբերության նշանակությունը: Առանձնապես անգնահատելի է քիմիական արդյունաբերության դերը գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման գործում: Ստորև տպագրում ենք մի շարք թվեր և փաստեր այդ մասին:**

★ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո հանքային պարարտանյութերի արտադրությունը ՍՍՌՄ-ում ավելացել է ավելի քան 250 անգամ, իսկ վերջին 25 տարում, 1938 թվականի համեմատությամբ՝ 5 անգամ: Նախատեսված է 1970 թվականին ՍՍՌՄ-ում արտադրել (ապրանքային արտահայտությամբ) 100 միլիոն տոննա պարարտանյութ, այսինքն՝ մոտ 6 անգամ ավելի, քան 1962 թվականին:

★ 1964 և 1965 թվականներին կարտադրվի այնքան հանքային պարարտանյութ, որ կարելի լինի ապահովել բոլոր հիմնական տեխնիկական կուլտուրաների ցանքերը, մի մասն էլ օգտագործել հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը ավելացնելու համար:

★ 1964 թվականին հացահատիկային կուլտուրաների տարածությունները պարարտացնելու համար կհատկացվի 10 միլիոն, 1965 թվականին՝ 15 միլիոն տոննա, բամբակի դաշտերի համար՝ 1964 թվականին՝ 2,8 միլիոն, 1965 թվականին՝ 3,2 միլիոն, շաքարի ճակնդեղի համար՝ համապատասխանաբար 4,6 և 4,8 միլիոն տոննա պարարտանյութ:

★ Մեկ տոննա ամոնիակային սելիտրան ցորենի բերքն ավելացնում է 3—4 տոննայով, բամբակինը՝ 2, շաքարի ճակնդեղինը՝ մոտ 12, վուշի թելինը՝ մոտ 1, կարտոֆիլինը՝ 18—20 տոննայով:

★ Հանքային պարարտանյութերի օգտագործումը հնարավորություն կտա 1964 թվականին աշնանացան ցորենի համախառն արտադրանքն ավելացնել 60—70 միլիոն ցենտներով: 1965 թվականին 20,5 միլիոն հեկտար աշնանացան ցորենի համար կհատկացվի 6,5 միլիոն տոննա պարարտանյութ:

★ 1964 թվականի 5,6 միլիոն հեկտար հատիկացու եգիպտացորենի դաշտերի համար հատկացվում է 2,8 միլիոն տոննա հան-





քային պարարտանյութ: Հատկացվող պարարտանյութերի ռացիոնալ օգտագործման դեպքում 1964 թվականին կարելի է լրացուցիչ ստանալ մոտավորապես 40, իսկ 1965 թվականին մոտ 50 միլիոն ցենտներ եգիպտացորենի հատիկ:

★ Պարարտանյութերի օգտագործման շնորհիվ 1970 թվականին լրացուցիչ կստացվի շաքարի ճակնդեղի 33 միլիոն ցենտներ բերք կամ 4 միլիոն 300 հազար տոննա շաքար:

★ Գյուղատնտեսության քիմիացումը հնարավորություն է տալիս ապահովել կայուն բերք, լիովին բավարարել երկրի հացահատիկի, մսի, կաթի և այլ մթերքների պահանջները: ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշմամբ նախատեսված է 1970 թվականին հացահատիկի համախառն բերքը ՍՍՌՄ-ում հասցնել 14—16 միլիարդ փթի, մսի արտադրությունը՝ 20—25 միլիոն, կաթինը՝ 115—135 միլիոն, շաքարինը՝ 10 միլիոն տոննայի:

★ Այդպիսի քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ ստանալու համար պահանջվում է արտադրել 70—80 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, որից 32 միլիոնը նախատեսված է օգտագործել տեխնիկական, բանջարանոցային, կերային կուլտուրաների ու կարտոֆիլի, իսկ 45 միլիոնը՝ հացահատիկային կուլտուրաների ցանքատարածություններում:

★ Մինչև 1970 թվականը հերբիցիդների և բույսերի պաշտպանության մյուս միջոցների արտադրությունը պետք է հասցվի 800—900 հազար տոննայի: Խոշոր մասշտաբներով թունաքիմիկատների ու հերբիցիդների օգտագործումը հնարավորություն կտա 15—20 անգամ կրճատել քաղհանի վրա կատարվող աշխատանքային ծախսումները, միաժամանակ հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը բարձրացնելով 1—2 ցենտներով:

★ 1964—1970 թվականներին գյուղատնտեսության քիմիացման հետ կապված ծախսերը կհասնեն մոտ 10,5 միլիարդ ռուբլու:

★ ՍՍՌՄ յոթնամյակի անցած հինգ տարիների ընթացքում կապիտալ ներդրումները քիմիական արդյունաբերության մեջ կազմել են 5,3 միլիարդ ռուբլի, գրեթե մեկ ու կես անգամ ավելի, քան սովետական իշխանության գոյության նախորդ 40 տարիներին: Այդ տարիներին, քիմիական ինդուստրիայի մեջ կապիտալ ներդրումների միջին տարեկան աճը հասել է 27 տոկոսի:

★ Քիմիական արդյունաբերության զարգացման և գյուղատնտեսության կոմպլեքսային քիմիացման կապիտալ ներդրումների ընդհանուր գումարը կկազմի ավելի քան 42 միլիարդ ռուբլի: Հատկապես բուռն կերպով կզարգանա սինթետիկ նյութերի և պարարտանյութերի արտադրությունը:





★ Մինչև 1970 թվականը նախատեսվում է հանքային պարարտանյութերի արտադրությունն ավելացնել 3,5—4 անգամ, պլաստմասսաներինը և սինթետիկ ձյութերինը՝ 4,4 անգամ, իսկ քիմիական արտադրանքի ընդհանուր ծավալը՝ 3—3,3 անգամ:

★ Քիմիական արդյունաբերության աճի միջին տարեկան տեմպերը պետք է կազմեն 17—19 տոկոս, իսկ նրա արտադրանքի տեսակարար կշիռը ամբողջ արդյունաբերության արտադրանքի մեջ մինչև 1970 թվականը գրեթե կրկնապատկվելու է:

★ 1964—1970 թվականներին քիմիական արդյունաբերության մեջ ներդրվելու է 42 միլիարդ ռուբլի, այդ տարիներին արդյունաբերության ու գյուղատնտեսության քիմիացումից ստացվելիք ընդհանուր եկամուտը կկազմի գրեթե 57 միլիարդ ռուբլի: Քիմիայի զարգացման համարյա յոթ տարվա ընթացքում կատարվելիք բոլոր ծախսումները ոչ միայն կհատուցվեն, այլև երկրին կտան մոտ 15 միլիարդ ռուբլու շահույթ:

★ Այդ տարիներին մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ տեղի կունենան կառուցվածքային նոր փոփոխություններ՝ կապված քիմիական արդյունաբերության զարգացման հետ: Քիմիական արդյունաբերության արտադրանքը կաճի ավելի քան 4 անգամ, այդ թվում սինթետիկ կաուչուկինը՝ 2 անգամ, ամոնիակինը՝ գրեթե 5, ծծմբաթթվինը՝ գրեթե 8, քացախաթթվինը՝ 5, հերբիցիդներինը՝ 5, սինթետիկ և արհեստական թելերինը՝ 3,8 անգամ և այլն:

★ 1964—1970 թվականներին ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության աճի տեմպերը զգալիորեն բարձր կլինեն արդյունաբերության մյուս ճյուղերի աճի տեմպերի համեմատությամբ: Եթե 1964—65 թվականներին արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը մեծանալու է 26 տոկոսով, ապա քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը, 1963 թվականի համեմատությամբ, ավելանալու է 54 տոկոսով:

★ Այս տարի մոտավորապես 1,4 անգամ կաճի ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության և նրա տարբեր ճյուղերի հետ կապված նորակառույցների շինարարական աշխատանքի ծավալը:

★ Մինչև այս տարվա վերջը մեր երկրում կկառուցվեն, կվերակառուցվեն և շահագործման կհանձնվեն ավելի քան 660 քիմիական ու նավթաթորման ձեռնարկություններ, ցեխեր և առանձին արտադրություններ:

---



# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ ԱՄՆ-ՈՒՄ

Ժողովրդական իմաստությունն ասում է՝ եթե ուզում ես տեսնել երկրի վաղվա օրը, նայիր նրա երիտասարդությանը: Իր երկրի երիտասարդ սերնդի մասին տագնապով էր խոսում հանգուցյալ պրեզիդենտ Ջ. Քենեդին. «Ես այնքան էլ համոզված չեմ,— ասել է նա,— որ շատ ամերիկացիներ հասկանում են, թե որքան մեծ և լուրջ է վտանգը, որը ծագել է այն բանի հետևանքով, ինչ կատարվում է մեր երիտասարդության հետ»:

Այս անհանգստությունն, անշուշտ, ունի իր խոր արմատները: ԱՄՆ-ում երիտասարդության համար ուղղակի պատուհաս է գործազրկությունը: Եթե այն հասակավոր աշխատունակների 5 տոկոսին է ընդգրկում, ապա երիտասարդ գործազուրկների տոկոսը կրկնակի չափով ավելի է: Երիտասարդների վիճակը հատկապես ծանր է խրոնիկական գործազրկության այնպիսի վայրերում, ինչպիսին են Դեյտրոյտը, Բուֆֆալոն, Պիտսբուրգը և այլն, իսկ Օհայոյի նահանգում 16—21 տարեկան երիտասարդ տղաների և աղջիկների 67 տոկոսը գործազուրկ են: Ավելի վատ է նեգրերի, մեքսիկացիների, և պուերտոռիկացիների վիճակը: Կլիվլենդի նեգրական շրջանում երիտասարդության 80 տոկոսը գործազուրկ է:

Նյու-Յորքի մունիցիպալ վարչության երիտասարդության գործերի հանձնաժողովի տվյալներով ներկայումս դպրոցներից դուրս գոյություն ունի 14—24 տարեկան պատանիների 571.300 հոգուց բաղկացած մի բանակ, որոնց 16-ից 24 տարեկան 72.200 հոգին լրիվ կամ մասնակի գործազուրկ են:

ԱԱՖ—ԱՊԿ պրեզիդենտ Դ. Մինին 1963 թվականի նոյեմբերին ԱՄՆ-ի այդ խոշորագույն պրոֆմիութենական միավորման կոնգրեսում հայտարարեց, որ «ավտոմատացումը անեծք է դառնում և կարող է հասցնել ազգային աղետի»: Անգամ խոշոր ձեռնարկատեր Դ. Սնայդերը վերջերս տագնապով ասել է. «Ավտոմատացումը Միացյալ Նահանգներում յուրաքանչյուր շաբաթ թվով 40.000-ից ավելի բանվորական տեղի կրճատում առաջացնող նոր գլխավոր գործոնն է»:

Ավտոմատացման առաջին զոհերը ոչ որակյալ բան-

վորներն են, որոնց ճնշող մեծամասնությունը կազմում է երիտասարդությունը: «Ազատ», «ավելորդ» երիտասարդության պրոբլեմը գնալով ավելի վտանգավոր բնույթ է ընդունում։ Պրոֆեսոր Ջեյմս Կոուլմենի հաշվարկումների համաձայն ԱՄՆ-ում ազատ բանվորական տեղերի քանակը տարեկան աճում է 300 հազարով, իսկ աշխատանք փնտրողների թիվը՝ 1.300 հազարով։

Ավելի վատ է, այս տեսակետից, գյուղական երիտասարդության վիճակը։ Ամերիկացի հրապարակախոս Մ. Հարինգտոնը իր «Այլ Ամերիկա» գրքում գրում է, որ քայքայված ֆերմերը տեխնիկայի կրկնակի զոհն է. նրան քշել են հողից ժամանակակից գյուղատնտեսական մեքենաները, իսկ քաղաքում նա տեղ չունի ինդուստրիալ տեխնիկայի հաջողությունների պատճառով։ Պաշտոնական տվյալներով գյուղական երիտասարդության 10-ից միայն մեկն է ապահովված աշխատանքով։

Համազգային մասշտաբով, յուրաքանչյուր տարի 700—800 հազար նոր, երիտասարդ, եռանդով ու աշխատելու ցանկությամբ լի մարդիկ հեղեղում են աշխատանքի շուկան, սակայն նրանց պահանջը չկա։ 1950-ական թվականների 19 միլիոնի փոխարեն այժմ աշխատանքի շուկայում երիտասարդների քանակը հասել է 26 միլիոնի։ Միայն 1962 թվականին շուրջ 700 հազար 16—21 տարեկան հասակի ամերիկյան պատանիներ ու աղջիկներ չեն սովորել դպրոցում և աշխատանք չեն ունեցել։ Անցյալ տարի նրանց թիվը հասավ մեկ միլիոնի։ ԱՄՆ-ի 6 միլիոն գործազուրկներից 1,3 միլիոնը 18—25 տարեկան երիտասարդներ են, որոնք գրեթե առանց բացառության, ցածր վարձատրվող և բազմազավակ ընտանիքների, գյուղատնտեսական բանվորների երեխաներ են։ 14-ից 17 տարեկան յուրաքանչյուր տասներորդ ամերիկացու համար, չնայած պարտադիր կրթության օրենքին, դպրոցը անթույլատրելի շռայլություն է։ Տարեկան շուրջ մեկ միլիոն պատանիներ ու աղջիկներ թողնում են դպրոցը՝ այն ավարտելուց 1—2 տարի առաջ։ Ընդհանուր առմամբ յուրաքանչյուր 5 աշակերտից 2-ին չի հաջողվում ավարտել դպրոցը։

Ամերիկյան դպրոցը խոր ճգնաժամ է ապրում։ Նոր-



մալ ուսուցման համար պակասում է 127 հազար դասասենյակ։ Երկու միլիոն երեխաներ սովորում են հակասանիտարական պայմաններում։ Դասատուների խիստ կարիք է զգացվում, եղածներից էլ 90 հազարը պաշտոնական տվյալներով անորակ են։

Երիտասարդության բարձրագույն կրթության պրոբլեմն ավելի սուր բնույթ ունի։ Այստեղ սոցիալական ընտրությունն ավելի խիստ է տեղի ունենում։ Բանվորների երեխաներն ԱՄՆ-ի բոլոր երեխաների 60 տոկոսն են կազմում, սակայն միայն նրանց 5 տոկոսն է բուհ ընդունվում և ավելի քիչը ավարտում։ Պատճառն այն է, որ թոշակի միջին չափը, որը ստանում են շատ քչերը, կազմում է տարեկան 300 դոլար, իսկ ուսման վարձը՝ համալսարանում կամ կոլեջում կազմում է տարեկան 1500—2000 դոլար, երբեմն 4000—5000 դոլար։

Դուրս մնալով դպրոցից, առավել ևս՝ բարձրագույն կրթության հնարավորություն չունենալով, նախկին դպրոցականների մի մասին է միայն հաջողվում աշխատանք գտնել, աշխատել որպես աշակերտ, օժանդակ բանվոր, վաճառող, ցրիչ և այլն։ Այս կարգի աշխատողներն ստանում են աղքատիկ աշխատավարձ։ Նրանց վրա չի տարածվում «Աշխատանքի արդարացի պայմանների մասին» օրենքը։ Այս անփորձ բանվորներին էլ ընկնում է վնասվածքների մեծ մասը։ Անգամ պաշտոնական մամուլի տվյալներով արտադրական տրավմատիզմի 50 տոկոսը պատահում է մինչև 25 տարեկան բանվորների հետ։ Գյուղատնտեսության նախկին մինիստր է. Բենսոնի վկայությամբ տրակտորների կիրառության կապակցությամբ տարեկան զոհվում են 1100 գյուղատնտեսական բանվորներ, որոնց 1/3-ը մինչև 20 տարեկաններն են։

Այսպիսով, աշխատանքը նույնպես ամերիկյան երիտասարդին չի տալիս ոչ նյութական և ոչ հոգեկան բավականություն։ Նրանք դարձյալ մնում են ծնողների խնամքի տակ և ինքնուրույն ընտանիք կազմելու անընդունակ։ Էլ չենք խոսում գործազուրկների մասին։ Սենատոր Պրոկսմայերը պաշտոնապես խոստովանեց, որ «գործազրկությունը մեր երիտասարդության մեջ ոգու անկում և հույսերի խորտակում է առաջացնում»։ Եվահա այս անկումային տրամադրությամբ երիտասարդության վրա է, որ իմպերիալիստական բուրժուա-

գիան տարածում է իր ապականիչ ազդեցությունը՝ գործի դնելով գաղափարական ներգործության բոլոր միջոցները՝ կինոն, ռադիոն, հեռուստատեսությունը և այլն, կատարելով մեծագույն հանցագործություն հասարակության հանդեպ։

Երիտասարդության բարոյական-հոգեկան այս վիճակով պետք է բացատրել հանցագործությունների արագ աճը ԱՄՆ-ում։ Յուրաքանչյուր 20 վայրկյանում այնտեղ կատարվում է լուրջ քրեական հանցագործություն, յուրաքանչյուր 4 րոպեում՝ սպանություն, սպանության նպատակով հարձակում կամ բռնաբարություն, յուրաքանչյուր 7 րոպեում՝ թալան, յուրաքանչյուր 46 վայրկյանում՝ գողություն։ Ամեն տարի ԱՄՆ-ում քրեական պատասխանատվության են ենթարկվում ավելի քան 1 միլիոն պատանի և աղջիկ, ընդ որում ձերբակալված՝ յուրաքանչյուր 5 դեռահասից մեկը աղջիկ է։

Բերված թվերը խոսում են ԱՄՆ-ի երիտասարդության ներկայի մասին, իսկ նրա ապագայի թվաբանությունը կատարում է սենատոր Թոմաս Դոդդը, ըստ որի հանցագործությունների ներկա տեմպերի դեպքում 1970 թվականին քրեական դատարանների առաջ կկանգնեն 1.500 հազար պատանիներ և աղջիկներ։

Ամերիկայի երիտասարդությունը փաստորեն մեկուսացված է երկրի քաղաքական կյանքից։ Ընտրություններին երիտասարդության մասնակցությանն արգելակում են ավելի քան 50 ցենզեր, իսկ սենատոր ընտրվելը փաստորեն բացառվում է երիտասարդության համար, քանի որ ըստ կոնստիտուցիայի, ընտրում են 30 տարեկանից բարձր անձանց։ Ընտրելու իրավունքից զրկված է նաև 18—21 տարեկան ամբողջ երիտասարդությունը։

Սակայն, չնայած այս պայմաններին, ամերիկյան երիտասարդությունը, որը տարիներ շարունակ լուռ է եղել, գնալով ավելի է բարձրացնում իր ձայնը իր կյանքի պայմանները բարելավելու համար։

Ա. ԴԱՎԹՅԱՆ



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ժողովրդի բարեկեցության բարձրացման բնագավառում ՍՄԿՊ ծրագրի կատարման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայում 1964 թվականի հուլիսի 13-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 14-ի և 15-ի համարներում։*

ՍՍՌՄ Գերագույն սովետի չորրորդ սեսիան, *ինֆորմացիոն նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 15—17-ի համարներում։*

Օրենք ՍՍՌՄ կոլտնտեսությունների անդամների կենսաթոշակների նպաստների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 16-ի համարում։*

Օրենք ՍՍՌՄ լուսավորության, առողջապահության, բնակարանային-կոմունալ տնտեսության, առևտրի և հասարակական սննդի և բնակչությանը անմիջականորեն սպասարկող ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողների աշխատավարձը բարձրացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 16-ի համարում։*

## 2. Չինական ղեկավարների սխալների մասին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ-ի պայքարի մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 4-ի համարում։*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ— Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ-ի պայքարի մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 4-ի համարում։*

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության հայացքներն ու քաղաքականությունը մանրբուրժուական, նացիոնալիստական, նեոտրոցկիստական թեքում են, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թ. 11-րդ և 12-րդ համարներում։*

## 3. Պայքարենք խնայողության և տնտեսման համար

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմում, լայն չափով ծավալել ժողովրդական տնտեսության մեջ խնայողության և տնտեսման համար, ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի և Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանների կոլեկտիվների նախաձեռնության մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հուլիսի 2-ի համարում։*

Խնայողության և տնտեսման համար,— *«Ս. Հ.»-ի 1964 թ. հուլիսի 5-ի առաջնորդողը։*

Ա. ԱՎԱԳՅԱՆ— Խելացիորեն օգտագործել շինարարության արժեքի իջեցման ռեզերվները, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հունիսի 26-ի համարում։*

## 4. Ավելի շատ կեր անասուններին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Գյուղի աշխատավորները մեծ ճնճուրյան նախօրյակին *«Ս. Հ.»-ի 1964 թ. հուլիսի 7-ի առաջնորդողը։*

Ստեղծենք կերի կայուն բազա, *«Ս. Հ.»-ի 1964 թ. հունիսի 28-ի առաջնորդողը։*

Մ. ՏԵՐ-ԿԱՐԱՊԵՏՅԱՆ—Կերերի սիլոսացման տեխնոլոգիայի ժամանակակից խնդիրները, *հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թ. 6-րդ համարում։*

## 5. Պայքարենք կրոնական սովորույթների և տրադիցիաների դեմ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Սոցիալիստական շինարարությունը ՍՍՌՄ-ում և կրոնական վերապրուկների հաղթահարումը: *«Գիտական աթեիզմի հիմունքներ» գրքից, էջեր 431—439, Հայպետհրատ, 1963։*

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ— Հնացած սովորույթների ու տրադիցիաների մասին, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թ. 12-րդ համարում։*

Ս. ԳԻՆՈՍՅԱՆ, Տ. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Քրիստոնեական մի քանի տոների և ծեսերի մասին, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1959։*

ԱՐԱ ՍՎԱՍՅԱՆ— Աստվածները մեռնում են, գիտա-աթեիստական տարեգրություն, *Հայպետհրատ, 1962։*





# ԿԱՐԴԱՑԵՔ ԱՅՍ ԳԻՐՔԸ

ՀՈՒԳՈ ԳԼՅԱԶԵՐ, դրամատիկական բժշկություն, *Հայպետհրատ, 1964 թ., 255 էջ, տպաքանակ 5.000, գինը 59 կոպ.։*

*Մահացու վտանգավոր և հաճախ կործանումով ավարտվող փորձերը, որ կատարել են բժիշկներն իրենց վրա, միշտ էլ ուշադրություն են գրավել, առաջացնելով և՛ զարմանք, և՛ հարգանք։ Բայց դրանք գրքի նյութ դարձրեց բժշկագիտության հիանալի պատմաբան պրոֆեսոր Հուգո Գլյազերը։ Հավաքել տարբեր երկրներում տարբեր ազգությունների բժիշկների իրենց վրա կատարած փորձերը, նկարագրել դրանք, ցույց տալ խիզախության գեղեցկությունը, հասցնել դրանք ընթերցողների լայն շրջաններին,— ահա հեղինակի նպատակը։*

*Այդ սխրագործություններից մի քանիսը մեծ հռչակ են ստացել. օրինակ, նշանավոր հիգիենիստ Մաքս Պետենկոֆերը իր տեսական դրույթներն ապացուցելու համար 1892 թվականին խմեց խոլերայի վիբրիոնների կուլտուրան. ախտորոշման նոր ձևերի մշակման նպատակով Ֆորսմանը երակի միջով կատետրը տարավ իր սրտի խոռոչը. առաջարկելով նոր դեղամիջոց՝ գիտնականն իր վրա ցուցադրեց նրա բուժիչ հատկությունը և օրգանիզմի համար անվտանգ լինելը։*

*«Լույս տալով ուրիշներին՝ այրվում եմ»,— այս բառերը հոլանդական հռչակավոր բժիշկ Վան Տյուլպն առաջարկեց դարձնել բժիշկների նշանաբանը, իսկ այրվող մոմը՝ նրանց զինքը։ Այս բառերը ամենայն իրավամբ կարելի է դարձնել նաև ավստրիական ականավոր գիտնական և հասարակական գործիչ պրոֆեսոր Հուգո Գլյազերի գրքի բնաբան։*

*«Փոքր մեծ մարդիկ»,— այսպես է անվանում Մաքսիմ Գորկին հայտնի կամ անհայտ բազմաթիվ այն անձնազոհ մարդկանց, որոնք խիզախումները կատարում են սրտի թելադրանքով և ոչ հրամանով։*

*Հուգո Գլյազերը ՍՍՌՄ-ում հայտնի է որպես ավստրո-սովետական բարեկամության ջատագով (նա Ավստրո-Սովետական բարեկամության ընկերության նախագահն է)։*

*Բժիշկների հերոսության և անձնազոհության թեմաները մոտ են Հուգո Գլյազերին, որովհետև նա դեռ երիտասարդ տարիներին մասնակցում էր վարակիչ հիվանդությունների դեմ պայքարի միջոցներ որոնելու աշխատանքներին։ Իր գիրքը ՍՍՌՄ-ում հրատարակելու համար հեղինակը գրել է մի քանի նոր էջեր՝ նվիրված հերոս տիեզերագնացներ Յուրի Գագարինին և Գերման Տիտովին։*

*Վերջին գլուխը նվիրված է կոսմիկական բժշկությանը, այն բանին, թե ինչպիսի փորձեր են կատարում գիտնականներն իրենց վրա, լրացնելով բժիշկների սխրագործությունների մասին ոսկյա գրքի էջերը։*

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ

ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 14

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 07255 Պատվեր 585 Տիրաժ 9.010

Հանձնված է արտադրության 9/VII 1964 թ.:
Ստորագրված է տպագրության 20/VII 1964 թ.:

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի
պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8ա

Գինը 8 կոպ.